Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# *Ագիտատորի*
# ԲԼՈԿՆՈՏ



№ 20 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1958

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---


Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։*






# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 41-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

*1958 թվականի նոյեմբերի 7-ին, Սովետական Միության, ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները, ամբողջ աշխարհի առաջադեմ մարդկությունը նշելու են Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի պանծալի 41-րդ տարեդարձը։*

*1917 թվականի նոյեմբերի 7-ին, Ռուսաստանի բանվորներն ու գյուղացիները, Կոմունիստական պարտիայի գլխավորությամբ տապալեցին կապիտալիստների ու կալվածատերերի տիրապետությունը և իրենց ձեռքը վերցրին քաղաքական իշխանությունը։*

*Ռևոլյուցիայի հաղթանակի օրը, երեկոյան, Սմոլնիում բացվեց Սովետների Համառուսական 2-րդ համագումարը, որը լսեց Լենինի զեկուցումները և ընդունեց հողի և հաշտության մասին դեկրետները։ Համագու-*



մարը կազմեց առաջին Սովետական կառավարությունը Վ. Ի. Լենինի գլխավորությամբ։

Մոսկվայի բանվորները ոգեշնչվելով Պետրոգրադի պրոլետարիատի հաղթանակով վըճռաբար հանդես եկան բուրժուազիայի դեմ և ջախջախեցին կոնտրռևոլյուցիոն զորամասերը ու հաստատեցին սովետական կարգեր։

Պետրոգրադին և Մոսկվային հետևեցին մյուս արդյունաբերական ու վարչական կենտրոնները։ Արդեն նոյեմբերի 4-ին Սովետական իշխանություն էր հաստատվել Իվանովո-Վոզնեսենսկում, Մինսկում, Վլադիմիրում, Լուգանսկում, Եկատերինբուրգում, Կազանում, Սամարայում, Սարատովում, Ուֆայում, Ռոստովում։ Դա Սովետական իշխանության իսկական հաղթարշավն էր։

Հաստատելով Սովետների իշխանություն, Հոկտեմբերյան ռևոլյուցիան վերջ տվեց սոցիալական և ազգային ճնշմանը, ազատագրեց մեր երկրի բոլոր ժողովուրդներին, սկիզբ դրեց աշխատավորների իսկական իրավահավասարությանը, բոլոր ժողովուրդների եղբայրությանը, ստեղծեց այնպիսի հասարակարգ, որտեղ վերացված են շահագործող դասակարգերը, ոչնչացված է մարդու շահագործումը մարդու կողմից։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի



շնորհիվ, մեր երկրում հաստատվեց բանվոր դասակարգի քաղաքական տիրապետությունը՝ պրոլետարիատի դիկտատուրան, ստեղծվեց բանվորների և գյուղացիների աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը։ Պատմության մեջ առաջին անգամ ժողովուրդը դարձավ իր բախտի, իր երկրի տերը։ Գործարանները, ֆաբրիկաները, երկաթուղիները, բանկերը, հողը և նրա ընդերքը դարձան համաժողովրդական սեփականություն։ Իմպերիալիստները չէին կարող հաշտվել Ռուսաստանում պրոլետարական ռևոլյուցիայի հաղթանակի հետ և ձգնում էին ետ շրջել պատմության ընթացքը, նրանք մեզ քաղաքացիական պատերազմ հայտարարեցին, ձեռնարկեցին ռազմական ինտերվենցիա, հույս ունենալով օրորոցում խեղդել սոցիալիստական ռևոլյուցիան։

Մեր երկրի ժողովուրդները դաժան պայքարում պաշտպանեցին Մեծ Հոկտեմբերի նվաճումները և վիժեցրին համաշխարհային ռեակցիայի բոլոր չարանենգ դիտավորությունները։

Կապիտալիստական շրջապատման պայմաններում անընդհատ պայքարելով միջազգային իմպերիալիզմի մեքենայությունների դեմ, ընկճելով դասակարգային թշնամիների

կատաղի դիմադրությունը, ՍՍՌՄ աշխատավորները Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ձեռնամուխ եղան խաղաղ սոցիալիստական շինարարության։

Կոմունիզմի մեծ ճարտարապետ Վ. Ի. Լենինը, դեռևս Սովետական իշխանության առաջին տարիներին, մշակեց մեր երկրում սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման գիտականորեն հիմնավորած պլանը։ Այդ պլանը նախատեսում էր երկրի սոցիալիստական ինդուստրացում, ծանր արդյունաբերության անշեղ զարգացում, ամբողջ ժողովրդական տնտեսության էլեկտրիֆիկացում, գյուղատընտեսության սոցիալիստական վերակառուցում, կուլտուրական ռևոլյուցիայի իրականացում։

Սոցիալիզմի կառուցումը տնտեսապես հետամնաց, գերազանցապես գյուղատնտեսական երկրում, ինչպիսին Ռուսաստանն էր, չափազանց դժվար էր։ Միջազգային իմպերիալիզմը ձգտում էր հրով ու սրով, բլոկադայով և սովի միջոցով բնաջնջել երկրի երեսից երիտասարդ Սովետական պետությանը։ Բացի դրանից մեր պարտիան, բանվոր դասակարգը նոր հասարակություն ըստեղծելու փորձ չունեին։

Կոմունիստական պարտիան բանվորների



և աշխատավոր գյուղացիության լայն մասսաներին համակեց սոցիալիստական շինարարության գաղափարներով և նրանք հաղթահարելով վիթխարի դժվարություններ, գիտակցաբար զոհաբերությունների դիմելով, սահմանափակելով իրենց նյութական պահանջմունքները, խանդավառությամբ կառուցեցին նոր գործարաններ, ֆաբրիկաներ, էլեկտրակայաններ, երկաթուղիներ, կոլտընտեսություններ ու սովխոզներ։

Սովետական երկիրը կարճ ժամանակամիջոցում դարձավ հզոր ինդուստրիալ տերություն, գյուղում հաղթանակեց կոլտնտեսային կարգը, մեր երկրում իրագործվեց իսկական կուլտուրական ռևոլյուցիա։ Սովետական ժողովուրդը, նրա քաջարի Զինված ուժերը երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին ոչ միայն պաշտպանեցին իրենց Հայրենիքի ազատությունն ու անկախությունը, մեծ Հոկտեմբերի նվաճումները, այլև վճռական ավանդ մուծեցին մարդկությունը ֆաշիստական ստրկացման սպառնալիքից փրկելու գործում։ Հիտլերյան Գերմանիայի և միլիտարիստական Ճապոնիայի դեմ ձեռք բերված մեծ հաղթանակի շնորհիվ Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրների ժողովուրդներ թոթափեցին կապիտալիստական ու գա-

ղուլթային ճնշման լուծը և դարձան իրենց բախտի տերերը, կանգնեցին սոցիալիստական շինարարության ուղու վրա։

Հետպատերազմյան տարիներին բուժելով պատերազմի ծանր վերքերը և վերացնելով նրա հետևանքները, սովետական ժողովուրդը չտեսնված կարճ ժամկետում վերականգնեց ժողովրդական տնտեսությունը, հսկայական չափերով գերազանցելով արտադրության նախապատերազմյան մակարդակը և խոշոր առաջընթաց քայլ կատարեց սոցիալիզմից կոմունիզմին անցնելու ճանապարհին։

Սովետական իշխանության անցած տարիներին անճանաչելիորեն փոխվել է մեր Հայրենիքը։ Նա ծածկվել է գործարանների, ֆաբրիկաների, էլեկտրակայանների, երկաթուղային ու ավտոմոբիլային մագիստրալների, հանքերի, կոլտնտեսությունների, սովխոզների խիտ ցանցով։ Սիբիրյան թավուտ տայգաներում, Միջին Ասիայի արևակեզ ավազուտներում, Անդրբևեռային տունդրաներում, Կովկասի լեռնահովիտներում առաջացել են արդյունաբերական խոշոր կենտրոններ և քաղաքներ։ Վոլգայի և Դնեպրի վրա, Սիբիրի հզոր գետերի վրա կառուցված են և կառուցվում են խոշորագույն էլեկտրակա-



յաններ։ Ղազախստանի և Ալթայի անծայրածիր տափաստաններում ծփում են ցորենի ծով արտերը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի պանծալի տարեդարձը սովետական ժողովուրդը դիմավորում է ՍՄԿԿ XX համագումարի պատմական որոշումների կենսագործման համար մղվող համաժողովրդական լարված պայքարի իրադրության մեջ։

Սովետական մարդիկ հպարտանում են արդյունաբերության բոլոր ճյուղերի հետագա զարգացման, արդյունաբերության ու շինարարության կառավարման կատարելագործման ուղղությամբ պարտիայի առաջադրանքները կատարելու գործում սոցիալիստական արդյունաբերության աշխատողների, մեր հերոսական բանվոր դասակարգի ձեռք բերած փթթխարի հաջողություններով։

ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքը 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, աճել է համարյա 11 տոկոսով, 1957 թվականին՝ 10 տոկոսով, 1958 թվականի առաջին կիսամյակում, 1957 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ, 10,5 տոկոսով։

Առանձնապես նշանակալից են ամբողջ

ժողովրդական տնտեսության, երկրի հզորության հետագա ամրապնդման և սովետական ժողովրդի բարեկեցության անշեղ վերելքի հիմքի՝ ծանր ինդուստրիայի վճռական ճյուղերի զարգացման գործում ձեռք բերած նվաճումները։

1957 թվականին մեր երկրում արտադրվել է 37 միլիոն տոննա չուգուն, 51 միլիոն տոննա պողպատ, 98,3 միլիոն տոննա նավթ, 463 միլիոն տոննա ածուխ, 20,2 միլիարդ խորանարդ մետր բնական գազ, 209,5 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։ 1958 թվականի առաջին կիսամյակում մեզ մոտ արտադրվել է ավելի շատ ածուխ, քան ամբողջ 1949 թվականին, նույնքան պողպատ և ավելի շատ չուգուն ու գլանվածք, քան ամբողջ 1950 թվականին, ավելի շատ էլեկտրաէներգիա, քան ամբողջ 1951 թվականին, համարյա նույնքան տրակտորներ, որքան ամբողջ 1953 թվականին, զգալիորեն ավելի շատ էլեկտրաքարշեր, քան ամբողջ 1954 թվականին, ավելի շատ նավթ, քան ամբողջ 1953 թվականին, ավելի շատ բնական գազ, քան ամբողջ 1956 թվականին։

Վերջին երկու տարում ձեռք բերված աճը գերազանցում է ցարական Ռուսաստանի տարեկան արտադրության ամբողջ ծավա-



լին. պողպատի գծով՝ մոտ 1,5 անգամ, ածխինը՝ 2,5 անգամ, նավթինը՝ մոտ 3 անգամ, ցեմենտինը ավելի քան 4 անգամ, էլեկտրաէներգիայինը՝ 20 անգամ։ 1957 թվականին ՍՍՌՄ-ում ավելի շատ պողպատ է ձուլվել, քան Անգլիայում և Արևմտյան Գերմանիայում միասին վերցրած։ Միայն Մագնիտագորսկի, Կուզնեցկի, Նիժնի-Տագիլի կոմբինատները և «Զապորոժստալ» գործարանը ավելի շատ չուգուն և պողպատ են թողարկում, քան Ֆրանսիան։

Եթե 1913 թվականին մեր երկիրը արտադրել է Անգլիայից 2,5 անգամ քիչ և Ֆրանսիայից էլ քիչ չուգուն, ապա մենք այժմ արտադրում ենք զգալիորեն շատ չուգուն, քան Անգլիան, Ֆրանսիան, և Բելգիան միասին վերցրած։ Ածխի հանույթով մենք գրավում ենք առաջին տեղը Եվրոպայում և երկրորդ տեղն աշխարհում, նավթի հանույթով 3-րդ տեղն աշխարհում։ Նավթի հանույթի միայն անցյալ տարվա աճը համարյա մեկ և կես անգամ գերազանցեց նախառևոլյուցիոն Ռուսաստանի նավթի տարեկան ամբողջ հանույթը։ Միայն Կույբիշևի հիդրոկայանը տարեկան 5 անգամ ավելի էլեկտրաէներգիա է արտադրում, քան Ռուսաստանի բոլոր

էլեկտրակայաններն արտադրել են 1913 թվականի ընթացքում։

Լենինը մեծ նշանակություն էր տալիս աշխատանքի արտադրողականության բարձրացմանը այն համարելով ամենից կարևորը և գլխավորը նոր հասարակարգի հաղթանակի համար։ 1957 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, արդյունաբերության մեջ բանվորների աշխատանքի արտադրողականությունը աճել է մոտ 9,5 անգամ, ԱՄՆ-ում՝ 2,3 անգամ, Անգլիայում՝ 1,4 անգամ, Ֆրանսիայում 2 անգամից քիչ ավել։ Այժմ արդեն աշխատանքի արտադրողականության մակարդակով ՍՍՌՄ-ը գերազանցել է Անգլիային ու Ֆրանսիային և զգալիորեն կրճատել է ԱՄՆ-ի նկատմամբ եղած խզումը։

Սովետական ամբողջ ժողովուրդը ջերմ հավանություն տվեց քիմիական արդյունաբերության արագ զարգացման մասին ՍՄԿԿ Կենտկոմի Մայիսյան պլենումի որոշմանը։

Քիմիական արդյունաբերության ձեռնարկությունները մեծ աշխատանք ծավալեցին պարտիայի առաջադրանքները կենսագործելու ուղղությամբ, գերակատարելով հիմնական տեսակի սինթետիկ նյութերի և պլաստիկ մասսաների, ինչպես նաև արհեստական



ու սինթետիկ թելի թողարկման առաջին կիսամյակի պլանը։

Արդյունաբերության զարգացման բնագավառում ձեռք բերված վիթխարի հաջողությունների ուղղակի արդյունք են այն բանի, որ արդյունաբերության ու շինարարության կառավարման վերակառուցումը, որը կատարվեց պարտիայի նախաձեռնությամբ, մեր տնտեսության մեջ բացահայտեց լրացուցիչ ռեզերվներ, բարձրացրեց տեղական օրգանների դերը տնտեսական հարցերի լուծման գործում, աշխատավորների միլիոնավոր զանգվածներին հնարավորություն տվեց էլ ավելի լայնորեն ցուցաբերելու ստեղծագործական ակտիվություն և նախաձեռնություն։

Կապիտալիստական երկրների հետ ՍՍՌ Միության մրցության մեջ վճռական նշանակություն ունեն տնտեսական զարգացման տեմպերը։ Սովետական Միությունը ԱՄՆ-ից առաջ է անցել ինչպես երկաթաքարի, ածխի, նավթի, չուգունի, պողպատի, ցեմենտի, բրդի գործվածքների արտադրության աճման տեմպերով, այնպես էլ արտադրության աճմամբ։ Էլեկտրաէներգիայի արտադրությամբ, գազի հանույթով և կոշիկի արտադրությամբ

ՍՍՌՄ-ն ԱՄՆ-ից անցել է աճման տեմպերով։

Այսպիսով արդյունաբերական արտադրանքի արտադրության բացարձակ չափերով Սովետական Միությունը արդեն վաղուց շատ առաջ է անցել Եվրոպայի խոշորագույն կապիտալիստական երկրներից՝ Անգլիայից, Ֆրանսիայից, Արևմտյան Գերմանիայից։ Ներկայումս հաջողությամբ լուծվում է բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ պատմական կարճ ժամկետում կապիտալիստական առավել զարգացած երկրներին, այդ թվում նաև ԱՄՆ-ին հասնելու և անցնելու խնդիրը։ Սովետական ժողովուրդն արդեն ապացուցել է, որ ինքն ի վիճակի է պատվով կատարելու այդ խնդիրը։

Կապիտալիստական երկրների հետ ՍՍՌՄ մրցության մեջ վճռական նշանակություն ունեն տնտեսական զարգացման տեմպերը։

1957 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքն ավելացել է ՍՍՌՄ-ում՝ 33 անգամ, ԱՄՆ-ում՝ 4,1 անգամ, Անգլիայում՝ 1,8 անգամ, Ֆրանսիայում՝ 2 անգամ։ Մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքն ավելացել է ՍՍՌՄ-ում՝ ավելի քան 200 անգամ, ԱՄՆ-ում՝ 17, Անգ-



լիայում՝ 5,1, Ֆրանսիայում՝ 2,6 անգամ, էլեկտրաէներգիայի արտադրանքը՝ ՍՍՌՄ-ում՝ 108, ԱՄՆ-ում՝ 29, Անգլիայում՝ 22, Ֆրանսիայում՝ 29 անգամ, պողպատի ձուլումը ՍՍՌՄ-ում՝ 12,1 անգամ, ԱՄՆ-ում՝ 3,2, Անգլիայում՝ 2,8, Ֆրանսիայում՝ 2 անգամ։

Սոցիալիզմի վճռական առավելությունները հանդես են գալիս նաև գյուղատնտեսության զարգացման տեմպերի մեջ։ Այսպես, նախապատերազմյան և հետպատերազմյան տարիներին (1930—1940 և 1946—1957 թ.թ.) գյուղատնտեսության համախառն արտադրանքի աճման տարեկան միջին տեմպերը ՍՍՌՄ-ում կազմել են 4,3 տոկոս, իսկ ԱՄՆ-ում՝ 1,2 տոկոս, իսկ 1954—1957 թ. թ. այդ տեմպերը ՍՍՌՄ-ում կազմել են 7,7 տոկոս, իսկ ԱՄՆ-ում ընդամենը՝ 1,1 տոկոս։ Եթե վերցնենք միայն խաղաղ տարիները, ապա կտեսնենք, որ նախապատերազմյան 11 (1930—1940 թ. թ.) և հետպատերազմյան 11 (1947—1957 թ. թ.) տարիներին արդյունաբերության աճման տարեկան միջին տեմպերը ՍՍՌՄ-ում կազմել են՝ 16,2 տոկոս, ԱՄՆ-ում՝ 2,7 տոկոս, Անգլիայում՝ 3,2 տոկոս, Ֆրանսիայում՝ 3,1 տոկոս։

Արդյունաբերական արտադրանքի աճման տարեկան միջին տեմպերը մեզ մոտ 1958

թվականի առաջին կիսամյակում, 1957 թվականի համեմատությամբ, կազմել են 11 տոկոս, իսկ ԱՄՆ-ում ոչ միայն չեն աճել, այլ ընկել են 11 տոկոսով։

ԱՄՆ-ում 1957 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ 1958 թվականի առաջին կիսամյակում արտադրությունը կրճատվել է. նավթ՝ 12 տոկոսով, ածուխ՝ 21 տոկոսով, պողպատ՝ 40 տոկոսով, ավտոմոբիլներ՝ 26 տոկոսով, սպառողական ապրանքներ՝ 20 տոկոսով։

«Երբ ես վատ տրամադրության մեջ եմ լինում,— ասել է Մասսաչուսետի տեխնոլոգիական ինստիտուտի պրոֆեսոր Ուիսները, — մտածում եմ այն մասին, որ 5 տարուց հետո Սովետական Միությունը բացահայտորեն մեզ կանցնի բոլոր բնագավառներում։ Բայց երբ ես տրամադրված եմ լինում օպտիմիստորեն, ես զգում եմ, որ նրան 10 տարի է հարկավոր դրան հասնելու համար»։

Այս ամենը վկայում են, որ մեր երկիրը վստահորեն ընթանում է տնտեսական ծաղկման ճանապարհով, որ սովետական ժողովուրդը հաջողությամբ լուծում է տնտեսական հիմնական խնդիրը՝ պատմական շատ կարճ ժամանակում բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ ա-



ռավել զարգացած կապիտալիստական երկրներին հասնելու և անցնելու խնդիրը։

Մեծ Հոկտեմբերի 41-ամյակը գյուղատնտեսության շեշտակի վերելքի ուղղությամբ պարտիայի ձեռնարկած միջոցառումների կենսագործման, գյուղատնտեսական արտադրության զարգացման գործում ձեռք բերած հսկայական հաջողություններով են դիմավորում կոլտնտեսային գյուղի աշխատավորները։ Գյուղատնտեսության հետագա զարգացման լայն ծրագիրը, որը մշակել են ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումը (1953 թ.), ՍՄԿՊ XX համագումարը և պարտիայի Կենտկոմի հաջորդ պլենումները, հաստատակամորեն կենսագործվում և հիանալի պտուղներ են տալիս։

ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումին հաջորդած 5 տարիներին սովետական ժողովուրդը հաջողությամբ կենսագործեց գյուղատնտեսության վերելքի ուղղությամբ պարտիայի ծրագիրը, որը հնարավորություն տվեց երկրի սոցիալիստական գյուղատնտեսությանը նոր առաջընթաց քայլ կատարելու կոմունիզմի կառուցման ճանապարհին։

Հայտնի է, որ նյութական շահագրգռվածությունը սոցիալիստական տնտեսավարության արմատական սկզբունքներից մեկն

է։ Կոլտնտեսությունների և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության աճման և հանրային անասնապահության զարգացման բնագավառում ուժեղացնելու նպատակով, պետությանը պարտադիր հանձնումների գները բարձրացվեցին հետևյալ չափերով՝ անասուններինը և թռչուններինը ավելի քան 5,5 անգամ, կաթինը և յուղինը՝ 2 անգամ, կարտոֆիլինը՝ 2,5 անգամ, բանջարեղենինը՝ միջինը 25—40 տոկոսով, գնման գները ավելացան՝ մսինը՝ միջինը 30 տոկոսով, կաթինը՝ 1,5 անգամ։ Գյուղատնտեսության պլանավորման նոր կարգը կոլտնտեսություններին և սովխոզներին հանձնեց ըստ կուլտուրաների ցանքերի, անասունների գլխաքանակի ավելացման, բերքատվության բարձրացման, կաթի, բրդի պլանների սահմանումը։ Դրա շնորհիվ բոլոր պայմաններն ստեղծվեցին կոլտնտեսականների, սովխոզների և ՄՏ-կայանների աշխատողների ստեղծագործական ակտիվության զարգացման համար։

Գյուղատնտեսության վերելքի կարևորագույն լծակներից մեկն էլ խոպան ու խամ հողերի յուրացումն էր։ Պարտիայի կոչով Ղազախստանի, Սիբիրի, Պովոլժյեի անծայ-





րածիր տարածությունները յուրացնելու մեկնեցին ավելի քան 350 հազար պատանիներ ու աղջիկներ, որոնք չտեսնված կարճ ժամկետում յուրացրին 36 միլիոն հեկտար հող։

Խամ ու խոպան հողերի յուրացումը և բերքատվության բարձրացումը հնարավորություն տվեցին զգալիորեն ավելացնելու հացահատիկի բերքը։ 1956 թվականին գյուղատնտեսության աշխատողները պետությանը հանձնեցին 3,3 միլիարդ փութ հաց, որը երբեք նախկինում չի ստացել մեր երկիրը։ Իսկ այս տարի մենք ավելի շատ հաց ունենք, քան 1956 թվականին։

Շաքարի ճակնդեղի բերքը անցյալ տարի, 1953 թվականի համեմատությամբ, ավելացավ 70 տոկոսով, վուշինը՝ 2,8 անգամ, բամբակինը՝ 13 տոկոսով, կարտոֆիլինը՝ 20 տոկոսով, բանջարեղենինը՝ 27 տոկոսով։ Վերջին 4 տարիներին մսի արտադրությունը ավելացել է 38 տոկոսով, կաթի արտադրությունը, 1954 թվականին եղած 38,2 միլիոն տոննայից, 1957 թվականին հասել է մինչև 54,7 միլիոն տոննայի։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումը (1955 թ.) խնդիր դրեց 1960 թվականին մեկ կովի կաթնատվությունը հասցնել 1.700 կգ.։ Մինչդեռ անցած 3 տարիներին (1955—

1957 թ. թ.) մեկ կովի միջին կաթնատվությունը բարձրացել է հասնելով 1.858 կիլոգրամի։

Այսպիսով ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի առաջադրանքը 6-ի փոխարեն երեք տարում կատարվեց։ 1957 թվականի գարնանը երկրում ծավալվեց բնակչության մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ ԱՄՆ-ին հասնելու համաժողովրդական շարժումը։

Այս հարցում ևս ձեռք են բերվել լուրջ հաջողություններ։ Հարյուրավոր կոլտնտեսություններ և սովխոզներ անցյալ տարի 100 հեկտար հողատարածությունների դիմաց տվել են 100 և ավելի ցենտներ միս, 300—400 կգ կաթ և այլն։ Բնակչության մեկ շնչին ընկնող կաթի արտադրությամբ մեր երկիրն արդեն 1958 թվականին կհասնի ԱՄՆ-ին։

Արդեն 1957 թվականին ՍՍՌՄ-ը գյուղատնտեսական արտադրության մի շարք մթերքներով մոտեցավ ԱՄՆ-ի գյուղատնտեսական արտադրության ծավալին, իսկ մի քանի մթերքներով արդեն հասել և նույնիսկ գերազանցել է ԱՄՆ-ին։ Մեզ մոտ կաթի արտադրությունը 1957 թվականին կազմեց ԱՄՆ-ի արտադրության մոտավորապես 95 տոկոսը, կենդանական յուղի արտադրու-



թյունը մի փոքր բարձր էր քան ԱՄՆ-ում։ ՍՍՌՄ-ը ԱՄՆ-ին գերազանցում է ցորենի արտադրության ծավալով ավելի քան 2 անգամ, շաքարի ճակնդեղի արտադրությամբ մոտ 3 անգամ, բրդի արտադրությամբ 2,5 անգամ։

Մեր Հայրենիքը ԱՄՆ-ին և աշխարհի մյուս բոլոր երկրներին զգալիորեն գերազանցում է բամբակի բերքատվությամբ։

Եթե 1950 թվականից մինչև 1953 թվականը ՍՍՌՄ-ում գյուղատնտեսության համախառն արտադրանքի աճման տարեկան միջին տեմպերը հավասար է եղել 1,6 տոկոսի, իսկ ԱՄՆ-ում 1,7 տոկոսի, ապա վերջին 4 տարում այդ արտադրանքի տարեկան միջին աճը ՍՍՌՄ-ում հասել է մինչև 7,1 տոկոսի, իսկ ԱՄՆ-ում ընկել է մինչև 1,1 տոկոսի։

Պարտիան մեծ աշխատանք կատարեց գյուղատնտեսությունը ղեկավար և մասնագետ կադրերով ամրապնդելու գործում։ Պարտիայի կոչով կոլտնտեսություններում, ՄՏԿ-ներում և սովխոզներում ղեկավար աշխատանքի մեկնեցին տասնյակ հազարավոր պարտիական և սովետական աշխատողներ, ինժեներներ, ագրոնոմներ, զոո-

տեխնիկներ և գյուղատնտեսության այլ մասնագետներ։

Այժմ յուրաքանչյուր կոլտնտեսությունում աշխատում է կամ ագրոնոմ, կամ զոոտեխնիկ, իսկ բազմաթիվ կոլտնտեսություններում և ագրոնոմ և զոոտեխնիկ։ Եթե 1953 թվականի հուլիսին կոլտնտեսություններում և ՄՏԿ-ներում հաշվվում էր բարձրագույն կրթություն ունեցող 83 հազար մասնագետ, ապա 1957 թվականի վերջին նրանց թիվը հասնում էր 277 հազարի։ Այժմ կոլտնտեսության նախագահների մեջ կան 28 հազար ագրոնոմ, զոոտեխնիկ, էկոնոմիստ, տեխնիկ-ինժեներ։

Վերջին տարիներին զգալիորեն բարձրացել է գյուղատնտեսության տեխնիկական զինվածությունը։ 4 տարում գյուղատնտեսությունն ստացել է՝ 908 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած), 293 հազար հացահատիկային կոմբայն, 467 հազար բեռնատար ավտոմոբիլ և բազմաթիվ այլ գյուղատնտեսական մեքենաներ։ Այժմ ՍՍՌՄ գյուղատնտեսությունն ունի մոտ 1 միլիոն 700 հազար տրակտոր, 450 հազարից ավելի հացահատիկային կոմբայն, 660 հազար բեռնատար ավտոմոբիլ և բազմաթիվ այլ գյուղատնտեսական մեքենաներ։



1954—1957 թ. թ. պետությունը գյուղատնտեսության մեջ 75 միլիարդ 400 միլիոն ռուբլի կապիտալ ներդրումներ է կատարել, որը 10 միլիարդ ռուբլով ավել է, քան բոլոր կապիտալ ներդրումները երկրորդ, երրորդ, չորրորդ հնգամյակների և 5-րդ հնգամյակի 3 տարիները միասին վերցրած։

Սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման գործում նոր, բացառիկ կարևոր քայլ էր կոլտնտեսային կարգի հետագա ամրապնդման և ՄՏ կայանների վերակազմության մասին ՍՄԿՊ Կենտկոմի և Սովետական կառավարության միջոցառումները։ Այդ միջոցառումների իրականացումը հնարավորություն է տալիս զգալիորեն լավ օգտագործել ժամանակակից տեխնիկան, արագացնել տեխնիկական պրոգրեսը գյուղատնտեսության մեջ, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, ավելացնել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը, իջեցնել նրանց ինքնարժեքը։

Գյուղատնտեսության էկոնոմիկայի վերելքի հիման վրա անընդհատ աճում են կոլտնտեսությունների եկամուտները, ավելանում են նրանց անբաժանելի ֆոնդերը, բարձրանում է աշխօրերին տրվող վարձատրությունը։ Կոլտնտեսությունների անբաժանելի

ֆոնդերը 1953 թվականին 63,1 միլիարդ ռուբլուց, 1957 թվականին հասել են 98,6 միլիարդ ռուբլու։ Կոլտնտեսությունների դրամական եկամուտները ավելացել են 2,4 անգամ, կոլտնտեսականների դրամական և բնամթերային եկամուտները մեկ աշխատողի հաշվով 1953 թվականի համեմատությամբ ավելացել են 33 տոկոսով։

Կոմունիստական պարտիան մշտական հոգատարություն է ցուցաբերում ժողովրդի բարօրության նկատմամբ, անում է ամեն բան, որ էլ ավելի բարելավվի ժողովրդի կյանքը, որ ավելի լրիվ բավարարվեն նրա նյութական ու կուլտուրական հարաճուն պահանջները։

Ժողովրդի հարաճուն պահանջները մեզ մոտ բավարարվում են ոչ միայն նյութական բարիքների արտադրության ընդլայնման, այլև ապրանքների գների իջեցման, աշխատավարձի կարգավորման, աշխատավորների ռեալ աշխատավարձի ավելացման, թոշակների բարձրացման, ուսման վարձի վերացման և այլ միջոցառումների շնորհիվ։ Մեր երկրում ամենուրեք, դեռահասների համար մտցված է 6-ժամյա բանվորական օր, նախատոնական և նախահանգստյան օրերին աշխատանքային օրը կրճատվել է 2 ժամով,



կգալիորեն ավելացել է հղիության և ծննդաբերության շրջանում կանանց տրվող արձակուրդների ժամկետը, վերացել է ուսման վարձը դպրոցներում և բուհերում։

Սովետական ժողովուրդը մեծ ոգևորությամբ դիմավորեց կենսաթոշակների վերաբերյալ օրենքը։ 1955 թվականին բնակչությունը պետությունից ստացել է 30,1 միլիարդ ռուբլու թոշակ, 1957 թվականին՝ 58,8 միլիարդ, իսկ 1958 թվականին կստանա 66 միլիարդ ռուբլի թոշակ։ Վերացվել է ամենամյա փոխառության բաժնեգրումը։

1957 թվականի հունվարի 1-ից բարձրացվել է ցածր վարձատրվող բանվորների և ծառայողների աշխատավարձը, վերացվել է մինչև 370 ռուբլի աշխատավարձ և թոշակ ստացողներից գանձվող հարկերը։ Դրա շընորհիվ բանվորների և ծառայողների եկամուտներն ավելացել են տարեկան 8 միլիարդ ռուբլով։

Մեր երկրի բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը 1950—1957 թ. թ. ավելացել է ավելի քան 1,5 անգամ։

1958 թվականին շարունակվում է արդյունաբերության բանվորների ու ծառայողների փոխադրումը կրճատված աշխատանքային օրվա, առանց աշխատավարձը պակասեց-

նելու։ 1958 թվականի հունվարի 1-ից վերացվեց ամուրիների, միայնակ և սակավանդամ ընտանիք ունեցող քաղաքացիների վրա դրված հարկերի գանձումը երեխաներ ունեցող բոլոր անձանցից, ինչպես նաև միայնակ կանանցից։

Այդ նույն ժամանակից պետությանը գյուղատնտեսական մթերքների պարտադիր հանձնումներից ազատվեցին կոլտնտեսականների, ինչպես նաև բանվորների ու ծառայողների անձնական օժանդակ տնտեսությունները։ Դրա հաշվին բնակչությունը շահել է ավելի քան 3 միլիարդ ռուբլի։ Ընթացիկ տարում, ինչպես և նախորդ տարիներին, բանկչությունը պետության հաշվին ստանում էր բանվորների ու ծառայողների սոցիալական ապահովագրության նպաստներ և կենսաթոշակներ, բազմազավակ և միայնակ մայրերին տրվող նպաստներ ու վճարումներ, ուսանողական թոշակներ, բժշկական ձրի օգնություն, ձրի ուսուցում, որակավորման բարձրացում և այլն։

Պարտիան և կառավարությունը խնդիր են դրել առաջիկա 10—12 տարում լուծել բնակարանային պրոբլեմը. 1958 թվականին նախատեսված է կառուցել և շահագործման հանձնել 61 միլիոն քառակուսի մետր ընդ-



հանուր տարածությամբ բնակելի շենքեր։ Բացի դրանից կոլտնտեսականների և գյուղական ինտելիգենցիայի ուժերով նախատեսված է կառուցել 800 հազար բնակելի տներ։ Արդեն 1957 թվականին յուրաքանչյուր 1.000 բնակչին կառուցվել է 10,6 բնակարան, մինչդեռ ԱՄՆ-ում եղել է 6,7, Անգլիայում՝ 5,9, Ֆրանսիայում՝ 6,2 բնակարան։ Վերջին 4 տարում ՍՍՌՄ քաղաքներում և բանավաններում ավելի շատ բնակելի տներ են կառուցվել, քան Սովետական իշխանության առաջին 22 տարիներին։ Անցյալ տարի քաղաքների աշխատավորները ամեն օր ստանում էին 200 նոր բնակարան, իսկ կոլտնտեսականները մոտ 1,5 հազար տուն։

Սոցիալիզմի մեծագույն նվաճումներից մեկն էլ ՍՍՌՄ-ում կատարված կուլտուրական ռևոլյուցիան է, որի շնորհիվ մեր երկիրը գիտության ու տեխնիկայի զարգացմամբ դուրս եկավ աշխարհում առաջին տեղերից մեկը։ Մինչև Հոկտեմբերյան ռևոլյուցիան մեր երկրի բնակչության երեք քառորդը անգրագետ էր։ Սովետական իշխանությունը աշխատավոր մասսաների համար լայն ճանապարհ բացեց դեպի լուսավորությունն ու գիտությունը։ Ներկայումս ՍՍՌՄ-ում ուսուցման բոլոր ձևերում ընդգրկված է

ավելի քան 50 միլիոն մարդ։ 1957 թվականին բուհերում և տեխնիկումներում սովորում էին ավելի քան 4 միլիոն մարդ։ Ժողովրդական տնտեսության մեջ աշխատում են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող ավելի քան 6,8 միլիոն մասնագետներ։

Նախառևոլյուցիոն Ռուսաստանում եղած 10 հազար գիտաշխատողի փոխարեն 1957 թվականին մենք ունեինք ավելի քան 260 հազար գիտաշխատող, որից 96 հազարը գիտության դոկտորներ ու թեկնածուներ են։ Միայն Միջին ասիական ռեսպուբլիկաների գիտությունների ակադեմիաներում ներկայումս ավելի շատ գիտաշխատողներ կան, քան եղել են ամբողջ ցարական Ռուսաստանում։

Սովետական բոլոր մարդիկ հսկայական հետաքրքրությամբ ընդունեցին ընկ. Ն. Ս. Խրուշչովի նամակը «Կյանքի հետ դպրոցի կապի ամրապնդման և երկրում ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին»։

Ընկ. Խրուշչովի նամակը պահանջում է, որ մեր դպրոցների գլխավոր խնդիրը լինի աճող սերունդը կյանքի, օգտակար աշխատանքի պատրաստելը, մեր երիտասարդու-



թյան մեջ սոցիալիստական հասարակության սկզբունքների նկատմամբ խոր հարգանք դաստիարակելը։

Սովետական մարդկանց անչափ ուրախացնում, նրանց սրտերը հպարտությամբ է լցնում մեր գիտնականների, ինժեներների, տեխնիկների, բանվորների խոշորագույն ներդրումը համաշխարհային գիտության, տեխնիկայի և կուլտուրայի գանձարանը։

1954 թվականի հունիսի 27-ին էլեկտրական հոսանք տվեց ատոմային էներգիայով աշխատող սովետական առաջին էլեկտրակայանը, իսկ 1958 թվականի սեպտեմբերին շարք մտավ ատոմային նոր էլեկտրակայանի առաջին հերթը՝ 100 հազար կիլովատ կարողությամբ։ Այդ կայանի լրիվ կարողությունը հասնելու է 600 հազար կիլովատի։ 1956 թվականի դեկտեմբերի 5-ին ջրարկվեց Վ. Ի. Լենինի անունը կրող ատոմային սառցահատը, որը կարող է լողալ մի ամբողջ տարի, առանց նավահանգիստ մտնելու։ Մերձմոսկովյան Դուբնո քաղաքում 1957 թվականի ապրիլին սկսեց աշխատել սինխրոֆազոտրոնը— միկրոմասնիկների՝ աշխարհում ամենահզոր արագացուցիչը։ Նրա օղակաձև էլեկտրամագնիտը կշռում է 36.000 տոննա։

1957 թվականի օգոստոսին ՍՍՌՄ-ում՝

աշխարհում առաջին արձակվեց գերհեռավոր, միջմայրցամաքային բալիստիկ հրթիռը, 1957 թվականի հոկտեմբերի 7-ին, նոյեմբերի 3-ին և 1958 թվականի մայիսի 15-ին բաց թողնվեցին երկրի սովետական երեք արհեստական արբանյակները՝ նոր դարագլուխ բացելով տիեզերական տարածության ուսումնասիրման ասպարեզում։ Այժմ նույնիսկ մեր հակառակորդները խոստովանում են, որ գիտության և տեխնիկայի զարգացմամբ, ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի տեխնիկական զինվածության մակարդակով, մասնագետների բարձր որակավորում ունեցող կադրերի առկայությամբ Սովետական Միությունը աշխարհում գրավում է առաջին տեղերից մեկը։ Սովետական Միությունը հասել է գիտատեխնիկական և արտադրական այնպիսի բարձր մակարդակի,որը նրան հնարավորություն է ընձեռում իր բնական հարստությունները օգտագործել հարաճուն ծավալներով, զարգացնել արտադրողական ուժերը այնպիսի տեմպերով, որոնց մասին առաջ նույնիսկ երազել չէին կարող։

Նշանակալից հաջողություններ են ձեռք բերվել գրականության և արվեստի զարգացման գործում։ Գրողները, արվեստի գործիչ-



ները, մեր ինտելիգենցիայի առաջավոր ջոկատներից մեկն են, որոնք ակտիվորեն պայքարում են կոմունիզմի վեհ իդեալների հաղթանակի համար, կոմունիստական հասարակության կառուցողներ դաստիարակելու համար։



Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի պանծալի տարեդարձը մեծագույն խանդավառությամբ են դիմավորում սոցիալիստական երկրների բոլոր ժողովուրդները, ամբողջ աշխարհի աշխատավորները։ Եվ դա միանգամայն հասկանալի է։ Չէ՞ որ Հոկտեմբերյան ռևոլյուցիան արմատական շրջադարձ էր ոչ միայն Սովետական Միության ժողովուրդների կյանքում։ Նա վճռական ազդեցություն գործեց համաշխարհային պատմության ամբողջ ընթացքի վրա, ամբողջ աշխարհի ժողովուրդների ճակատագրի վրա։

Վ. Ի. Լենինը գրել է. «...Մենք իրավունք ունենք հպարտանալու և հպարտանում ենք նրանով, որ մեզ երջանկություն բաժին ընկավ սկսելու Սովետական պետության կառուցումը, սկսելու դրանով համաշխարհային պատմության նոր դարաշրջան, այն

Նոր դասակարգի տիրապետության դարաշրջանը, որը ճնշված է բոլոր կապիտալիստական երկրներում և ամենուրեք գնում է դեպի նոր կյանք, դեպի հաղթանակ բուրժուազիայի դեմ, դեպի պրոլետարիատի դիկտատուրան, դեպի մարդկության ազատագրումը կապիտալի լծից, իմպերիալիստական պատերազմներից»։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան հաղթանակեց մարքսիզմ-լենինիզմի դրոշով։ Անցավ որոշ ժամանակ և Հոկտեմբերի գծած ուղիով սկսեցին ընթանալ Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրներ, ստեղծվեց սոցիալիզմի անխորտակ լագերը։ Շարժման հորձանուտի մեջ մտավ գաղութային Արևելքը, որի ստրկացված ժողովուրդները փշրում են գաղութակալության կապանքները և կանգնում ազգային անկախության ու առաջադիմության ուղու վրա։ Սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը Չինաստանում և Ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրներում, համաշխարհային պատմության ամենանշանավոր իրադարձություններն են Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի համաշխարհային պատմական նշանակությունն այն է, որ նա գցեց դեպի սոցիալիզմ տանող սյունազարդ ուղին, բա-



ցահայտեց այն ընդհանուր օրինաչափությունները, որոնք կիրառելի են դեպի սոցիալիզմ ընթացող բոլոր երկրների համար։

ՍՍՌՄ բազմակողմանի օգնության և փոխադարձ համագործակցության շնորհիվ ժողովրդական դեմոկրատիայի երկրները անշեղորեն իրագործում են սոցիալիստական ինդուստրացումը, զարգացնում արդյունաբերությունը։

1957 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքը ՉԺՌ-ում՝ 1949 թվականի համեմատությամբ՝ ավելացել է 5,6 անգամ, Լեհաստանում նախապատերազմյան ժամանակաշրջանի համեմատությամբ՝ ավելի քան 5 անգամ, Չեխոսլովակիայում՝ մոտ 3 անգամ, ԳԴՌ-ում՝ 2,4 անգամ, Ռումինիայում՝ 3,5 անգամ, Հունգարիայում՝ մոտ 4 անգամ, Բուլղարիայում՝ մոտ 8 անգամ, Ալբանիայում՝ 14,6 անգամ ՄԺՌ-ում՝ 4,6 անգամ։

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում հիմնականում ավարտվել են սոցիալիստական վերափոխությունները, սոցիալիստական արտադրահարաբերությունները գերիշխող են դարձել երկրի էկոնոմիկայի բոլոր ճյուղերում։ 1957 թվականին այստեղ արդյունաբերության և գյուղատնտեսության

սոցիալիստական սեկտորին բաժին էր ընկնում ամբողջ ժողտնտեսության արտադրանքի ավելի քան 90 տոկոսը։ Բուլղարիայում սոցիալիզմը անբաժանելիորեն տիրապետում է ամբողջ էկոնոմիկայում, կապիտալիստական տնտեսաձևը լրիվ վերացվել է ինչպես գյուղում, այնպես էլ քաղաքում։ Չեխոսլովակիայում սոցիալիստական արտադրական հարաբերությունները առաջատար են ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում, ԳԴՌ-ում՝ սոցիալիստական սեկտորը արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ գրավում է 88,7 տոկոսը։ Ժողովրդական Չինաստանում 1958 թվականի ապրիլին արդյունաբերական ձեռնարկությունների համախառն արդադրանքը անցյալ տարվա ապրիլի համեմատությամբ աճել է 42 տոկոսով։ Ժողովրդական դեմոկրատիայի եվրոպական երկրներում արդյունաբերական արտադրանքի աճը այդ նույն ժամանակամիջոցում կազմեց 11—17 տոկոս։

Չին ժողովրդի առջև խնդիր է դրված՝ մոտակա 15 տարվա ընթացքում արդյունաբերական կարևոր տեսակների արտադրության մակարդակով հասնել և անցնել Անգլիային, երկիրը դարձնել հզոր սոցիալիստական ին-



դուստրիալ տերություն։ Այդ խնդրի լուծումով ՉԺՌ-ն կհասնի արդյունաբերության զարգացման այն մակարդակին, որն ուներ ՍՍՌՄ-ն Հայրենական պատերազմի սկզբին։ Արդեն երկրորդ հնգամյակի վերջին (1962 թ.) ՉԺՌ-ն արդյունաբերական արտադրանքի մակարդակով կհասնի այնպիսի զարգացած երկրների, ինչպիսիք են Ճապոնիան և Ֆրանսիան։ Երկրորդ համաշխարհային պատերազմից առաջ Բուլղարիան արդյունաբերական զարգացման տեսակետից մի մակարդակի վրա էր կանգնած Թուրքիայի և Հունաստանի հետ։ Իսկ 1956 թվականին Բուլղարիայի արդյունաբերական արտադրանքը 1939 թվականի համեմատությամբ ավելացել է 6,7 անգամ, մինչդեռ Թուրքիայինը՝ 2,3 անգամ Հունաստանինը՝ 1,9 անգամ։

Չեխոսլովակիայում ստեղծված են բոլոր պայմանները բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքով առավել զարգացած կապիտալիստական երկրներին հասնելու և անցնելու համար։ Այժմ Չեխոսլովակիան բնակչության մեկ շնչին ընկնող պողպատի ձուլմամբ անցել է Շվեդիայից և Ֆրանսիայից, էլեկտրաէներգիայի արտադրությամբ՝ Ֆրանսիային, Իտալիային, Ճապոնիային։

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման գործում ձեռք բերած հաջողությունները հնարավորություն տվեցին ԳԴՌ-ին մոտակա ժամանակաշրջանի համար առաջ քաշել հիմնական տնտեսական խնդիրը, որի էությունը կայանում է նրանում, որպեսզի ցուցադրվի ԳԴՌ-ի սոցիալիստական կարգի գերազանցությունը Բոննի իմպերիալիստական ուժերի նկատմամբ և բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքով հասնել և անցնել ԳՖՌ-ից։

Մեծ են Ժողովրդական Դեմոկրատիայի երկրների հաջողությունները գիտության և կուլտուրայի զարգացման գործում։ ՉԺՌ-ում 8 տարվա ընթացքում պատրաստվել է տարբեր պրոֆիլի 369 հազար մասնագետ. դա 150 հազարով ավելի է ուսանողների այն թվից, որ ավարտել են հին Չինաստանի բուհերը վերջին 50 տարվա ընթացքում։ Լեհաստանում բուհերի թիվն աճել է 3 անգամ, նախքան պատերազմը Լեհաստանում կար 12 հազար ինժեներ, իսկ 1956 թվականին՝ 70 հազար։ Չեխոսլովակիայում մինչև պատերազմը բուհերում ամեն տարի սովորում էր 23,5 հազար ուսանող, իսկ 1956 թվականին՝ 48,5 հազար։

ՍՍՌՄ-ը որպես սոցիալիզմի լագերի ա-



մենահզոր և շատ փորձ ունեցող երկիր, անշահախնդիր և եղբայրական օգնություն է ցույց տալիս բոլոր սոցիալիստական երկրներին։ Այդ երկրների ժողովուրդները ՍՍՌՄ-ի մեջ տեսնում են սոցիալիզմի հենարանը, նրա նկատմամբ երախտագիտության և բարեկամության խոր զգացմունք են տածում, վճռական հակահարված տալով բոլոր նրանց, ովքեր ցանկանում են քայքայել սոցիալիզմի լագերի անխորտակելի միասնությունը։

Սոցիալիստական լագերի երկրների եղբայրական համագործակցությունը և մարտական համերաշխությունը սոցիալիզմի հաղթական գործի երաշխիքն է։

Սոցիալիստական երկրների փոխհարաբերությունները հիմնված են պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա և բնորոշվում են եղբայրական համագործակցությամբ և սոցիալիստական փոխադարձ օգնությամբ։ Սոցիալիստական երկրների միջև չկա և չի կարող լինել շահագործման, անտագոնիստական հարաբերություններ։ Ընդհակառակը, սոցիալիստական պետությունները կազմում են մեկ միասնական հզոր լագեր, ժողովուրդների մեծ համագործակցություն, որի նպատակն

է տնտեսական և քաղաքական բնագավառներում սերտ համագործակցության և փոխադարձ օգնության հիման վրա մաքսիմալ չափով օգտագործել համաշխարհային սոցիալիստական սիստեմի բոլոր առավելությունները՝ էկոնոմիկայի անշեղ վերելքի, աշխատավորների նյութական բարեկեցության բարելավման և ամբողջ սոցիալիզմի լագերի հզորությունը ուժեղացնելու համար։

Մեծ են մեր նվաճումները, բայց էլ ավելի հոյակապ են մեր հեռանկարները։

ՍՄԿՊ 20-րդ համագումարում նշվեց, որ անհրաժեշտ է մշակել մեր երկրի էկոնոմիկայի զարգացման մի քանի հնգամյակների հեռանկարային պլան։ Մի շարք կարևորագույն ճյուղերի վերաբերյալ այդ պլանի որոշ ցուցանիշների նշումները ցույց են տալիս, թե այժմ մեր երկիրը ինչպիսի վիթխարի քայլ կարող է անել ժողովրդական տնտեսության հետագա զարգացման, կոմունիզմի կառուցման ճանապարհին։

Նախնական հաշվումներով նախատեսված է 15 տարվա ընթացքում, երկաթաքարի հանույթը հասցնել 250—300 միլիոն տոննայի, չուգունի ձուլումը՝ 75—85 միլիոն տոննայի, պողպատի ձուլումը՝ 100—



120 միլիոն տոննայի, ածխի հանույթը՝ 650—750 միլիոն տոննայի, նավթինը՝ 350—400 միլիոն տոննայի, էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 800—900 միլիարդ կիլովատ-ժամի, ցեմենտի արտադրությունը՝ 90—110 միլիոն տոննայի, շաքարինը՝ 9—10 միլիոն տոննայի, բրդե գործվածքներինը՝ 550—650 միլիոն մետրի, կաշվեկոշկեղենինը՝ 600—700 միլիոն զույգի։

Հենվելով սոցիալիստական գյուղատնտեսության ձեռք բերած հաջողությունների վրա և հաշվի առնելով նրա հսկայական ռեզերվները, մոտակա տարիներում պետք է հասնենք հացահատիկի և անասնաբուծական մթերքների արտադրության զգալի ավելացման։ Շատ բան պետք է արվի հացահատիկի արտադրությունը 11 միլիարդ փթի հասցնելու համար։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի հոբելյանական սեսիայում տված զեկուցման մեջ ընկ. Խրուշչովն ասաց, որ մոտիկ ապագայի համար Կոմունիստական պարտիայի պլանները նախատեսնում են ծանր ինդուստրիայի վճռական ճյուղերի զարգացում 2—3 անգամ, գյուղատնտեսության հետագա շեշտակի վերելք, որը հնարավորություն կտա առաջիկա 15 տարում զգալիորեն

բարձրացնել մեր ժողովրդի կենսամակարդակը, հասնել սովետական մարդկանց նյութական ու կուլտուրական հարաճուն պահանջմունքների բավարարմանը։

Համաշխարհային-պատմական այդ խնդրի իրականացման համար սովետական ժողովրդի պայքարի մեջ խոշոր և վճռական էտապ կհանդիսանա ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թ. թ. պլանը, որի կոնտրոլ թվերը կքննարկի ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարը։

Նախահոկտեմբերյան այս օրերին մեր անծայրածիր Հայրենիքի բոլոր անկյուններում՝ Բալթիկայից մինչև Խաղաղ օվկիանոս, Հյուսիսային բևեռից մինչև Մեծ Չինաստանի սահմանները, ամենուրեք եռում է ստեղծագործական աշխատանքը, վեր են խոյանում նոր գործարանների, ֆաբրիկաների, հանքավայրերի, էլեկտրակայանների հսկա կորպուսները, ձգվում են նոր յուրացված բերքառատ հողերի հսկայական տարածությունները։

Ամբողջ թափով ծավալվում է աշխարհի ամենախոշոր Բրատսկի, ինչպես նաև Ստալինգրադի, Կրիմենչուգի, Իրկուտսկի, Նովոսիբիրսկի հիդրոկայանների շինարարությունը։ Մետալուրգիական վիթխարի



գիգանտներ են կառուցվում Ստալինսկում և Կարագանդայում։ Այս տարի չուգուն կտան 7 նոր դոմնային վառարաններ, որոնք չուգունի տարեկան ձուլումը կավելացնեն 4 և կես միլիոն տոննայով, որն ավելին է, քան տվել են հին Ռուսաստանի բոլոր գործարանները՝ 1913 թվականին։ Բարձր տեմպերով են աշխատում անցյալ տարի շահագործման հանձնված Դոնբասի 37 կոմերիտական ածխահորերը։

Սովետական մարդը կոմունիզմի շինարարության գործին է ծառայեցնում մեր երկրի ընդերքի անսպառ գանձերը՝ Յակուտական ալմաստները, Կուրսկի մագնիտային անոմալիայի, Կուստանայի, Խակասիայի, մերձանգարյան երկաթահանքերը, Բաշկիրիայի և Թաթարիայի նավթը, Ուկրաինայի, Կուբանի, Ստավրոպոլի, Բուխարայի բնական գազը և ընդերքի բազմաթիվ այլ հարստությունները։

Չիմանալով ինչ է գործազրկությունը, սովետական մարդիկ հանգիստ և վստահորեն աշխատում են ամեն մեկն իր պոստում, իրենց լուման մտցնելով կոմունիստական շինարարության հոյակապ խնդիրների կենսագործման ասպարեզում։ Նրանք վստահ են իրենց ուժերին, վաղվա օրվա

նկատմամբ, էլ ավելի հիանալի է նրանց ապագան։ Որտեղ էլ աշխատելիս լինի սովետական մարդը՝ գործարանում, թե ֆաբրիկայում, կոլտնտեսությունում, թե տրանսպորտում, գիտական հիմնարկում, թե դպրոցում, նա օրինական հպարտություն է զգում իր Հայրենիքի նկատմամբ, ձգտում է իր աշխատանքով էլ ավելի նպաստել նրա ծաղկմանն ու բարգավաճմանը, կոմունիզմի կառուցմանը։

Պատմության զարգացման ամբողջ ընթացքը անհերքելիորեն ցույց է տալիս, որ ժամանակն աշխատում է կոմունիզմի օգտին։ Այժմ կոմունիզմն արդեն հեռավոր ապագայի հարց չէ. Ամեն օր, ամեն ժամ, սովետական ժողովրդի հերոսական աշխատանքի ամեն մի հաջողության մեջ պարզորոշ կերպով ուրվագծվում է կոմունիզմի հոյակապ շենքը, բացահայտվում են նորանոր հնարավորություններ մեր առաջընթացն էլ ավելի արագացնելու համար։

---

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# Ի ՊԱՏԻՎ ՊԱՐՏԻԱՅԻ XXI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ

(Թվեր և փաստեր)

*Մտնելով Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ, ռեսպուբլիկայի արտադրական ձեռնարկությունների կոլեկտիվները նոր, բարձր պարտավորություններ են վերցրել և ոչ մի ջանք չեն խնայում ստանձնած պարտավորությունները պատվով կատարելու համար։ Համառ ու աննկուն աշխատանքով նրանք ձգտում են տալ Հայրենիքին էլ ավելի շատ ու բարձրորակ արտադրանք, տարեկան պլանները կատարել ժամկետից շուտ և համագումարը դիմավորել արժանավայել նվերներով։*

✪ Երևանի Պահածոների գործարանը հոկտեմբերի 7-ին կատարեց ընթացիկ տարվա տասը ամիսների արտադրական պլանը։ Թողարկվել է 33 միլիոն 600 հազար տուփ մրգի և բանջարեղենի պահածոներ, որը 6 միլիոն տուփով ավելի է, քան արտադրվել է 1957 թվականի նույն ժամանակամիջոցում։ Գործարանի կոլեկտիվը պարտավորվել է Հոկտեմբերյան Սոցիա-

լիստական Մեծ ռևոլյուցիայի 41-րդ տարեդարձը դիմավորել տարեկան պլանը լրիվին կատարած։

✪ Ս. Մ. Կիրովի անվան Կահույքի ֆաբրիկան, ծավալած մրցության շնորհիվ, անցած 9 ամիսների համախառն արտադրանքի թողարկման պլանը կատարեց 102 տոկոսով։ Ի պատիվ ՍՄԿՊ XXI համագումարի, ֆաբրիկայի աշխատավորները պարտավորվել են տարեկան պլանը կատարել դեկտեմբերի 15-ին, մինչև տարվա վերջը տալ 200 հազար ռուբլու արտապլանային արտադրանք և թողարկել միայն գերազանց որակի կահույք։ Օրերս այստեղ տեղադրվեց նոր տիպի հիդրավլիկ մամլիչ մեքենա, որի շնորհիվ զգալիորեն բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը։

✪ Արարատի ցեմենտի-շիֆերի կոմբինատի կոլեկտիվը կատարելով անցած ամիսների արտադրական առաջադրանքները, պլանից ավել թողարկել է զգալի քանակությամբ արտադրանք։ Ձեռնարկության բանվոր-ծառայողները պարտավորվել են 4-րդ եռամսյակի պլանը կատարել ժամկետից 6 օր շուտ, լրացուցիչ թողարկել 200 հազար պայմանական շիֆեր, 4 հազար տոննա կրաքար և 500 տոննա կիր։

✪ Ագարակի պղնձամոլիբդենային կոմբինատի աշխատողները նոր հաջողությունների են հասել պլանների կատարման ու գերակատարման գործում։ Լեռնագործները հանքավայրի բացման աշխատանքների պլանը կատարել են 142,8 տոկոսով, իսկ շինմոն-



տաժային աշխատանքները՝ 112,7 տոկոսով, տալով մեկ ու կես միլիոն ռուբլու միջոցների խնայողություն։ Մեկ բանվորի աշխատանքի միջին արտադրողականությունը բարձրացել է 35 տոկոսով։ Ներկայումս ձեռնարկության աշխատողները պայքարում են հանքավայրի բացման աշխատանքների տարեկան պլանը կատարել ժամկետից երկու ամիս շուտ՝ նոյեմբերի 7-ին, իսկ շինմոնտաժային աշխատանքների պլանը՝ դեկտեմբերի 20-ին։

✪ Ներկայումս Լենինականում կառուցվում է հղկող հաստոցների գործարան, որը արտադրելու է երեք տիպի հղկող և հատուկ նշանակություն ունեցող չորս տարբեր տեսակի հաստոցներ, որոնք օգտագործվելու են հաստոցաշինական, սարքաշինական և գործիքաշինական գործարաններում։

✪ XXI համագումարի պատվին ծավալված սոցմրցման մեջ լավ հաջողությունների է հասել Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատի կոլեկտիվը։ Մետաղագործները և քիմիագործները պլանից դուրս երկրին տվել են հարյուրավոր տոննաներ պղինձ, սուպերֆոսֆատ և ավելի քան 1 միլիոն 300 հազար ռուբլու կուտակում։ Պլանի համեմատությամբ, նրանք աշխատանքի արտադրողականությունը բարձրացրել են 6,8 տոկոսով։

✪ Երևանի Դերմատին-մոմլաթի ֆաբրիկայի կոլեկտիվը անցած 9 ամիսների պլանը կատարեց 108,6 տոկոսով, տալով միայն բարձրորակ արտադրանք։ Կոլեկտիվը միաժամանակ պարտավորվել է բոլոր

ցուցանիշներով տարեկան պլանը կատարել նոյեմբերի 29-ին և մինչև տարվա վերջը տալ 500 հազար ռուբլու արտապլանային արտադրանք։

✪ Երևանի բրդյա նուրբ գործվածքեղենի կոմբինատը գերակատարեց համախառն արտադրանքի իր 9 ամսվա առաջադրանքները։ Մանվածքային ցեխի բանվորները 15—20 տոկոսով գերակատարում են իրենց օրվա առաջադրանքները։ Խնայողության շնորհիվ տնտեսված մանվածքի հաշվին պատրաստվել է 10 հազար 770 մետր կտոր։ Իրենց առաջադրանքները հաջողությամբ կատարում և գերակատարում են նաև գզող և նախապատրաստական ցեխերը։

✪ Երևանի Շահումյանի անվան Կաշվի գործարանը հաջողությամբ կատարելով իր պլանները, երկրին տվել է ավելի քան 2,6 միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։ Գործարանի կոլեկտիվը որոշել է ի պատիվ ՍՄԿՊ XXI համագումարի և ՀԿՊ XX համագումարի տալ միայն գերազանց որակի արտադրանք։

✪ Մտնելով սոցիալիստական մրցության մեջ Երևանի Փոքր հիդրոտուրբինների գործարանը ձեռք է բերել նոր հաջողություններ։ Գործարանը արդեն երկրին տվել է մի քանի միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։ Արտադրանքի ինքնարժեքը իջել է 8,2 տոկոսով, որից ստացվել է 266 հազար ռուբլու ոչ պլանային կուտակումներ։

---

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՆՈՅԵՄԲԵՐ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 41-րդ տարեդարձը

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


Վ. Ի. ԼԵՆԻՆ— Պրոլետարիատի խնդիրների մասին մեր ռևոլյուցիայում, *Երկեր, հատոր 24, էջ 1—9, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ի՞նչ է Սովետական իշխանությունը, *Երկեր, հատոր 29, էջ 295—298, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Սովետական իշխանության հերթական խնդիրները, *Երկեր, հատոր 27, էջ 279—333, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Հոկտեմբերյան ռևոլյուցիայի չորսամյա տարեդարձի առթիվ, *Երկեր, հատոր 33, էջ 37—48, Հայպետհրատ, 1952։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին *(1903—1953), Հայպետհրատ, 1953։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ— Հոկտեմբերյան ռևոլյուցիայի մի-

չազգային բնույթը, *Երկեր, հատոր 10, էջ 271—284, Հայպետհրատ, 1949։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Զեկուցում պարտիայի XX համագումարին։

## 2. Հայ ժողովրդի վերածնունդը

*(Հայաստանում Սովետական իշխանության հաստատելու 38-րդ տարեդարձը)*

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին, *Երկեր, հատոր 32, էջ 402—445, Հայպետհրատ, 1952։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ի՞նչ է Սովետական իշխանությունը. *Երկեր, հատոր 29, էջ 295—296, Հայպետհրատ, 1951։*

Ս. Հ. ԹՈՎՄԱՍՅԱՆ— Սովետական Հայաստանը Մեծ Հոկտեմբերի ծնունդն է, *Հայպետհրատ, 1957։*

## 3. Նոր հաջողություններով նշանավորենք ՍՄԿՊ XXI համագումարը

Դեպի Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարը, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի սեպտեմբերի 9-ի համարում։*

Դեպի ՍՄԿՊ XXI համագումարը. *«Լենինյան ուղիով» ամսագրի 1958 թվականի 9-րդ համարի առաջնորդողը։*



Ի պատիվ Մեծ Հոկտեմբերի *(թվեր և փաստեր), տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1958 թվականի 18-րդ և 19-րդ համարներում։*

## 4. Բարձր ցուցանիշներով կատարենք ստանձնած պարտավորությունները

*(Օգտագործել տեղական փաստեր, զրույցի նյութ դարձնել, թե ով ինչպես է կատարում սոցմրցության ստանձնած պարտավորությունը)։*

## 5. Ավելի շատ բնակելի տներ աշխատավորներին

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.— Ավելի լրիվ չափով բավարարել ժողովրդի նյութական աճող պահանջմունքները, ՍՄԿՊ *XX համագումարին տված զեկուցումից։*

ՍՄԿՊ Կենտկոմում և ՍՍՌՄ Մինիստրների Սովետում — վարչական, սպորտային և հասարակական այլ շենքերի ու կառուցվածքների շինարարության համար հատկացվող դրամական միջոցների և նյութական ռեսուրսների ծախսումը կանոնավորելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հոկտեմբերի 7-ի համարում։*

*Բնակարանային շինարարությունը առաջնահերթ գործ է, «Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հոկտեմբերի 10-ի համարում։*





## 6. Բարելավենք անասունների խնամքը մսուրային շրջանում

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Անասնաբուծության հետագա վերելքի խնդիրները, *ՍՄԿԿ XX համագումարին տված զեկուցումից, էջ 88—93, Հայպետհրատ, 1956։*

Նյութեր անասնաբուծության մթերատվությունը բարձրացնելու, կերի բազան ամրապնդելու մասին, *տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 9-րդ համարում։*

## 7. Ժողովրդական կրթության զարգացման կարևոր խնդիրները

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Նամակ ՍՄԿԿ Կենտկոմի նախագահությանը կյանքի հետ դպրոցի կապի ամրապնդման և երկրում ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի սեպտեմբերի 24-ի համարում։*

Ժողովրդական կրթության զարգացման կարևոր խնդիրները, *«Պրավդա»-ի առաջնորդողը տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի սեպտեմբերի 24-ի համարում։*

## 8. Ամերիկյան պրովոկացիաները չին ժողովրդի նկատմամբ



ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ պատասխանը ՏԱՍՍ-ի թղթակցի հարցերին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հոկտեմբերի 7-ի համարում։*

Չին Գե-խուայի դիմումը Տայվանում ապրող հայրենակիցներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հոկտեմբերի 7-ի համարում։*

Վերջ տալ ամերիկյան պրովոկացիաներին Հեռավոր Արևելքում *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1958 թվականի հոկտեմբերի 9-ի համարում։*

---

## СОДЕРЖАНИЕ



Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ